Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# Ագիտատորի
# ԲԼՈԿՆՈՏ

215

№ 17 ՍԵՊՏԵՄԲԵՐ 1958

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



---


Խմբագրության հասցեն.— Երևան, ՀԿՊ Կենտկոմ, II հարկ, 60-րդ սենյակ։ Հեռախոս՝ 2—52—78։




# ՆՈՐ ՈՒՍՈՒՄՆԱԿԱՆ ՏԱՐԻՆ

Սկսվեց նոր ուսումնական տարին մասսայական դպրոցներում, բարձրագույն և միջնակարգ մասնագիտական ուսումնական հաստատություններում։ Ամառային արձակուրդներից հետո, մեր երկրի միլիոնավոր երեխաներ, պատանիներ և աղջիկներ նորից վերադարձան դեպի հարազատ դպրոց, որպեսզի քրտնաջան աշխատանքի միջոցով նորանոր գիտելիքներ ձեռք բերեն, պատրաստվեն դառնալու կոմունիզմի լիարժեք կառուցողներ։

Աշխարհում չկա մի այլ երկիր, որտեղ մատաղ սերնդի ուսման և դաստիարակության համար ստեղծված լինեն այնպիսի բացառիկ լավագույն հնարավորություններ, ինչպես մեր երկրում։ Մեր պարտիայի և Կառավարության մշտական հոգատարության շնորհիվ, ամեն տարի միլիարդավոր ռուբլիներ են ներդրվում ժողովրդական կրթության զարգացման համար։ Կառուցվում են նորանոր դպրոցներ, ինստիտուտներ, տեխնի-





կոմներ, դրանք հարստացվում լավագույն գույքով և ուսման համար անհրաժեշտ այլ սարքավորումներով։ Մեր ինստիտուտներն ու համալսարանները ամեն տարի դպրոցին տալիս են հազարավոր որակյալ ուսուցիչներ ու դասատուներ։ Դրա շնորհիվ մեր երկրում տարեցտարի ընդլայնվում է դպրոցական ցանցը, անհամեմատ ավելանում սովորողների թիվը։

Ժողովրդական կրթության գործը աննախընթաց վերելք է ապրում նաև մեզ մոտ, Հայաստանում։ Միայն վերջին հինգ տարիների ընթացքում Հայաստանում միջնակարգ դպրոցների թիվը 295-ից հասավ 403-ի, որից 238 դպրոց՝ գյուղական վայրերում։ Եթե 1949—50 ուսումնական տարում միայն 8—10-րդ դասարաններում սովորում էին ընդամենը 18.700 աշակերտ, ապա 1957—1958 ուսումնական տարում դրանց թիվը հասավ 58 հազար 390-ի։ Զգալիորեն աճել է նաև շրջանավարտների թիվը։

Անցյալի գիրկն է անցել այն ոչ-ճիշտ պատկերացումը, թե դպրոցն ավարտելուց հետո միակ պարտադիր ուղին՝ հետագա կրթության շարունակումն է բարձրագույն ուսումնական հաստատությունում։ Մեր երկրի բազմաթիվ պատանիներ և աղջիկներ



դպրոցն ավարտելուց հետո, հասունության ատեստատը ձեռքին, հպարտությամբ մեկնում են արտադրություն՝ լրացնելու մեր փառապանծ բանվոր դասակարգի շարքերը։ Վարվելով այդպես, միաժամանակ նրանք համոզված են, որ ցանկության դեպքում առկա են բոլոր հնարավորությունները, որպեսզի նրանք շարունակեն իրենց կրթությունը բարձրագույն դպրոցում՝ հեռակայման միջոցով, կամ որոշ արտադրական փորձ ձեռք բերելուց հետո՝ նույնիսկ ստացիոնար ինստիտուտում կամ համալսարանում։ Սոցիալիստական հասարակարգը լայնորեն բացել է կյանքի բոլոր բնագավառների դռները երիտասարդ, աճող սերնդի համար։ Ինժենե՞ր ես ուզում դառնալ, ճարտարապե՞տ, ձուլո՞ղ, թե՞ երկաթուղային՝ խնդրեմ, ընտրիր ցանկացածդ մասնագիտությունը, փորձի՛ր ուժերդ ու ընդունակություններդ, տքնի՛ր և հասի՛ր նպատակիդ։

Հարազատ Կոմունիստական պարտիան այսպիսի հոյակապ հնարավորություններ ստեղծելով մեր մատաղ սերնդի ուսման և դաստիարակության համար, միաժամանակ մեր բոլոր երեխաներին, պատանիներին ու աղջիկներին հիշեցրել ու հիշեցնում է, որ մեր մեծ Հայրենիքի արժանավոր զավակներ

դառնալու համար նրանցից միայն մեկ բան է պահանջվում՝ սովորել, սովորել և դարձյալ սովորել։

Միջնակարգ դպրոցը այն հիմնական օղակն է, որտեղ մեր երեխաները ամենաբազմազան գիտելիքներ ձեռք բերելու հետ միասին, դրսևորում են նաև իրենց ընդունակությունները, հակումները, ձգտումները, նախապես (գուցե և ոչ վերջնականորեն) որոշում, թե կյանքի ո՞ր բնագավառում պետք է կիրառեն իրենց ուժերն ու գիտելիքները։ Դպրոցն ավարտելուց հետո ի՞նչ դառնալ՝ ո՞ր դպրոցականին չի հուզել այս հարցը՝ միջնակարգ դպրոցն ավարտելու պահին։

Մեր դպրոցական սիստեմում տեղի ունեցող փոփոխությունները օգնում են աշակերտներին էլ ավելի ճիշտ հաշվի առնելու իրենց ընդունակությունները և դրանց առավել արդյունավետ կիրառման բնագավառ ընտրելու գործում։ Վերջին տարիներում ուսումնական պրոցեսը էլ ավելի է մոտեցվել արտադրությանը։ Տեսական գիտելիքներ ստանալու հետ մեկտեղ, աշակերտներին հնարավորություն է տրվում լինել արտադրության մեջ, մոտիկից ծանոթանալ արդյունաբերական ու գյուղատնտեսական



արտադրության զանազան պրոցեսներին։ Արդեն երկրորդ տարին է, որ ուսումնաարտադրական պրակտիկան մեր ռեսպուբլիկայի բոլոր միջնակարգ դպրոցներում պարտադիր է համարվում։ Պոլիտեխնիկական ուսուցումը գնալով իր հաստատուն տեղն է գրավում մեր դպրոցական կյանքում։ Սակայն ուժեղացնելով դպրոցականներին արտադրական գիտելիքներով զինելու գործը, բնավ չի ենթադրվում, որ այդ բանը պետք է տեղի ունենա տեսական գիտելիքներ տալու հաշվին։ Արտադրության մեջ աշխատանքի նախապատրաստելու հետ միասին իր պատշաճ և անփոխարինելի դերը պետք է խաղա հանրակրթական առարկաների դասավանդումը։ Փորձը ցույց է տալիս, որ աշակերտների մի մասը բավարար չափով չի յուրացնում հանրակրթական առարկաները։ Միջնակարգ դպրոցների որոշ շրջանավարտներ բուհերում ընդունելության քննություններ հանձնելու ժամանակ հանդես են բերում ցածր գիտելիքներ, աններելի կերպով չեն տիրապետում մայրենի լեզվին, պատմությանը, թույլ են ֆիզիկայից, մաթեմատիկայից, բնագիտությունից։ Սա ցույց է տալիս, որ մեր ռեսպուբլիկայի որոշ դպրոցներում ցածր մակարդակի վրա է

գտնվում նշված առարկաների դասավանդումը։ Հասկանալի է, որ նման բացեր թույլ չտալու համար, ժողովրդական տնտեսությանը և բուհերին բազմակողմանիորեն պատրաստված, խորը և կայուն գիտելիքներով զինված մարդիկ տալու համար. անհրաժեշտ է ամեն կերպ բարելավել ուսումնա-կրթական աշխատանքների որակը դպրոցում։ Իսկ դա պետք է անել ուսումնական տարվա հենց սկզբից, հենց այժմվանից։

Լուրջ խնդիրներ են կանգնած նաև բարձրագույն ուսումնական հաստատությունների առջև։ Մեր երկրի ժողովրդական տնտեսության մեջ աշխատող մասնագետների շարքերը ամեն տարի լրացվում են երիտասարդ մասնագետներով, որոնք բուհերից արտադրություն են մեկնում, որպեսզի իրենց գիտելիքներն ու երիտասարդական խանդավառությունը ի սպաս դնեն կոմունիզմի կառուցման գործին։

Վերջին տարիներում բարձրագույն ուսումնական հաստատություններում նույնպես մեծ փոփոխություններ է մտցվել ուսումնական պրոցեսի մեջ. այժմ ավելի մեծ ուշադրություն է դարձվում ուսանողների տեսական և արտադրական ուսուցման զու-



գակցմանը, ավելի մեծ տեղ է հատկացվում նրանց տնտեսագիտական գիտելիքներով զինելու հարցին։

Մեր ռեսպուբլիկայի բուհերը և միջնակարգ մասնագիտական ուսումնական հաստատությունները խնամքով նախապատրաստվելով նոր ուսումնական տարվան, ունեն բոլոր հնարավորությունները, որպեսզի այս տարի էլ ավելի բարձրացնեն ուսման որակը, բարելավեն երիտասարդ մասնագետների պատրաստման գործը։

Մեծ ու հոյակապ են այն խնդիրները, որանք կենսագործվում են մեր ժողովրդի կողմից Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ։ Այդ խնդիրների մեջ իրենց խոշոր դերն ունեն մեր դպրոցներն ու բուհերը։ Այս ուսումնական տարում էլ ավելի բարձրացնելով աշակերտների և ուսանողների ուսուցման մակարդակը և բարելավելով նրանց կոմունիստական դաստիարակության գործը, ռեսպուբլիկայի դպրոցներն ու բուհերը Հայրենիքին կտան բարձրորակ կադրեր և լիարժեք սովետական քաղաքացիներ։

———

## ԲԱՐՁՐ ՑՈՒՑԱՆԻՇՆԵՐԻ ՀԱՄԱՐ

Վ. ՀՈՎԱՍԱՓՅԱՆ

ՍՍՌՄ քիմիական արդյունաբերության հետագա հզոր զարգացման մասին ՍՄԿՊ Կենտկոմի Մայիսյան պլենումի որոշումը մեծ ոգևորությամբ և աշխատանքային խանդավառությամբ ընդունվեց Կիրովականի Ա. Մյասնիկյանի անվան Քիմիական կոմբինատի բանվորների և ինժեներա-տեխնիկական աշխատողների կողմից։ Դա նոր խթան հանդիսացավ սոցիալիստական մրցության ծավալման համար, որի շնորհիվ կոմբինատի կոլեկտիվը այս տարվա առաջին կիսամյակի արտադրական պլանը կատարեց 103,8 տոկոսով։ Միաժամանակ կոմբինատը լավ ցուցանիշների հասավ նաև մյուս բնագավառներում. աշխատանքի արտադրողականության պլանը կատարվեց 105,2 տոկոսով։



ՍՄԿՊ Կենտկոմի Մայիսյան պլենումի որոշումը մեծ հեռանկարներ է բացում կոմբինատի առջև։ Նախատեսված պլանի համաձայն մոտակա տարիներին մեծ չափով ընդլայնվելու է կոմբինատի արտադրական կարողությունը, կառուցվելու են քիմիական նոր նյութերի արտադրության ցեխեր, մշակվել և արդեն հաստատվել են հիմնական ցեխերի ավտոմատացման նախագծերը և այլն։

Այդ մեծ խնդիրների հաջող կենսագործման նպատակին է ուղղված կոմբինատի ագիտկոլեկտիվի աշխատանքը։ Ավելի քան 100 կոմունիստ ագիտատորներ ցեխերում զրույցներ են անցկացնում բանվորների մեջ։ Այդ զրույցները հետաքրքիր, բովանդակալից և նպատակասլաց լինելու համար կոմբինատի պարտիական կազմակերպությունը ագիտատորների համար սիստեմատիկորեն կազմակերպում է սեմինար պարապմունքներ և դասախոսություններ, որտեղ պարզաբանվում են միջազգային և ներքին կյանքի, ինչպես նաև կոմբինատի առջև կանգնած խնդիրներին վերաբերող հարցերը։ Վերջերս, օրինակ, ագիտատորների համար կազմակերպվեց սեմինար՝ «ՍՄԿՊ Կենտկոմի Մայիսյան պլենումի որոշումը քիմիական ար-

դյունաբերության զարգացման մասին և կոմբինատի ագիտատորների խնդիրները» թեմայով, որը մեծ հետաքրքրություն առաջ բերեց ունկնդիրների մեջ։

Բացի այդ, կոմբինատի պարտիական կազմակերպությունը մեծ տեղ է հատկացնում ագիտատորներին անհատական օգնություն ցույց տալու գործին։ Մինչև ագիտացիոն զրույցների սկսվելը, պարտիական կոմիտեի անդամները հանդիպումներ են ունենում առանձին ագիտատորների հետ, պարզում թե վերջիններս որքանով են յուրացրել այս կամ այն կարևոր հարցը, իրենց խորհուրդներով ու ցուցումներով օգնում նրանց՝ զրույցը բանվորների հետ հետաքրքիր և բովանդակալից դարձնելու համար։

Իրենց լավագույն և արդյունավետ ագիտացիոն աշխատանքով կոմբինատում աչքի են ընկնում արտադրության առաջավորներ, կոմունիստներ Բ. Դավթյանը, Ա. Պողոսյանը, Ա. Ազարյանը Ս. Գևորգյանը, Հ. Պողոսյանը Բ. Սարգսյանը, Ալ. Իսրայելյանը և ուրիշներ, որոնք մեծ բարեխղճությամբ են կատարում իրենց վրա դրված պարտականությունները։

Ագիտացիոն-պրոպագանդիստական աշխատանքի փորձը պարբերաբար լուսաբան-



վում է «Կիրովականի քիմիագործ» գործարանային բազմատիրաժ թերթի և ցեխային պատի թերթերի էջերում։

Կոմբինատի արտադրական հաջողություններին մեծ չափով նպաստում է նաև ագիտացիոն աշխատանքի այնպիսի ձև, ինչպիսին է ագիտացիոն զեկուցումը, դասախոսությունը։ Անցած ամիսների ընթացքում կոմբինատում կազմակերպվել են ավելի քան 100 զեկուցում և դասախոսություն զանազան թեմաների շուրջ։ Այդ զեկուցումներն ու դասախոսությունները մեզ մոտ կարդացվում են հենց ցեխերում և աշխատամասերում, որտեղ ավելի շատ ունկնդիրներ են մասնակցում։

Վերջին ժամանակներս զգալիորեն աճել է բանվորների հետաքրքրությունը տեխնիկական թեմաների, և հատկապես քիմիական արդյունաբերության, պլաստմասսաների, սինթետիկ կաուչուկի, հանքային պարարտանյութերի և մյուս քիմիկատների արտադրության նկատմամբ։ Այդ պատճառով էլ կոմբինատի պարտիական կոմիտեն մեծ ուշադրություն է նվիրում նշված հարցերի մասին ավելի շատ զեկուցումներ և դասախոսություններ կազմակերպելու գործին։ Պարտիական կոմիտեին այս հարցում մեծ օգնու-

թյուն է ցույց տալիս կոմբինատի դասախոսական խումբը։ Դասախոսական խմբի անդամները նախօրոք կազմված պլանի համաձայն սիստեմատիկաբար հանդես են գալիս բանվորների առջև։ ՍՄԿՊ Մայիսյան և Հունիսյան պլենումների որոշումները պարզաբանելու նպատակով դասախոսական խմբի անդամ Ս. Իսահակյանը զեկուցում է կարդացել «Հանքային պարարտանյութերը ժողովրդական տնտեսության մեջ», Լ. Արղուշյանը՝ «Քիմիան՝ ՍՍՌՄ ժողովրդական տընտեսության մեջ», Ա. Բաղդասարյանը՝ «Ատոմային էներգիայի օգտագործումը խաղաղ նպատակներով» թեմաներով և այլն։

Ուշադրության արժանի աշխատանք են տանում կոմբինատի ագիտատորները երիտասարդ բանվորների և ինժեներա-տեխնիկական աշխատողների շրջանում։ Բացի արտադրությանը, երկրի ներքին ու միջազգային կյանքին վերաբերող հարցերից, ագիտատորները երիտասարդության հետ տարվող իրենց մասսայական-քաղաքական աշխատանքը ծառայեցնում են երիտասարդությանը ավագ սերնդի ռևոլյուցիոն անցյալի օրինակներով դաստիարակելու գործին։ Այս տեսակետից հատկանշական է դասախոսական խմբի անդամ Գևորգյանի կարդացած



«Կիրովականի ռևոլյուցիոն անցյալը», Ա. Օհանյանի «Հիշիր և ստեղծագործիր» թեմաներով դասախոսությունները։ Այս դասախոսությունները օգնում են մեր երիտասարդությանը խորը գիտակցելու և հասկանալու իրենց ավագ եղբայրների ու հայրերի հերոսական աշխատանքային գործերը և դառնալու նրանց արժանի հետևորդներ։ Այսպես, օրինակ, Ա. Օհանյանի «Հիշիր և ստեղծագործիր» թեմայով դասախոսությունից № 27 ցեխի երիտասարդ բանվորները հստակ պատկերացում ստացան թե առաջին հնգամյակի տարիներին ինչպիսի ծանր պայմաններում հիմնադրվեց Կիրովականի քիմիական կոմբինատը, որի 25-ամյակը նշվեց անցյալ տարի։ Փաստական նյութերով ցույց տրվեցին կոմունիստների և կոմերիտականների աշխատանքային սխրագործությունները՝ աշխատանքի բարձր արտադրողականության, արտադրանքի ինքնարժեքի իջեցման, հումքի և էլեկտրաէներգիայի խնայողության համար մղվող պայքարում։ № 27 ցեխի ագիտատորների լավ աշխատանքը մեծ չափով նպաստել է այդ ցեխի արտադրական հաջողություններին։ Այս տարվա առաջին կիսամյակի ընթացքում ցեխը պետք է պլանից դուրս երկրին տար

25 տոննա ցիանաձուլվածք, սակայն, երբ հանրագումարի բերվեցին առաջին կիսամյակի արդյունքները պարզվեց, որ ցեխը պլանից դուրս արտադրել է ավելի շատ ցիանաձուլվածք։

Կոմբինատի ագիտատորները լուրջ աշխատանք են տանում արտադրության մեջ ետ մնացողներին առաջավորներին հասցնելու ուղղությամբ։

Այսպես, № 3 ցեխը առաջին եռամսյակում չկատարեց առաջին տեսակի ամիակային սելիտրայի արտադրության պլանը, 65 տոկոս առաջին տեսակ տալու փոխարեն, նա տվեց 60 տոկոս։ Այս հարցը քննարկվեց պարտիական ժողովում։ Պարզվեց, որ այդ ցեխի մեքենաներն ու ապարատները գտնըվում են անբավարար տեխնիկական վիճակում, անհրաժեշտ խնամք չի տարվում դրանց նկատմամբ։ Պարտիական ժողովից հետո ցեխի կոլեկտիվը սկսեց աշխատել այնպես, որպեսզի ոչ միայն կատարի ամիակային սելիտրայի արտադրության պլանը, այլև այն գերակատարի։ Այդ ցեխում իրենց աշխատանքը զգալիորեն աշխուժացրին նաև ագիտատորները։ Նրանք բանվորներին սիստեմատիկաբար բացատրում էին ցեխի և ամբողջ կոմբինատի առջև կանգնած խնդիր-



ները, լայնորեն լուսաբանում և տարածում արտադրության առաջավորների աշխատանքի փորձը։ Լավ աշխատանքը տվեց հիանալի արդյունք։ Ցեխը հաջողությամբ դուրս բերվեց ճեղքվածքից և այժմ 65 տոկոս առաջին տեսակի ամիակային սելիտրայի փոխարեն նա տալիս է 80,6 տոկոս առաջին տեսակի արտադրանք, որը նշանակում է 134 հազար ռուբլու արտապլանային արտադրանք։

Հենվելով ձեռք բերված հաջողությունների վրա, ներկայումս ցեխերի պարտիական կազմակերպությունները և կոմբինատի պարտիական կոմիտեն, ինչպես նաև բոլոր ագիտատորները զբաղված են այն հարցով, որպեսզի հաջողությամբ ապահովեն տարեկան արտադրական պլանի կատարումը 1958 թվականի դեկտեմբերի 29-ին։

Կիրովականի քիմիագործները վճռականությամբ լի են պատվով կատարելու իրենց վրա դրված պարտավորությունները և նրանք ուժեր չեն խնայի քիմիական արդյունաբերության հետագա զարգացման մասին ՍՄԿՊ Կենտկոմի Մայիսյան պլենումի որոշումը ժամանակին և անթերի կատարելու համար։

---

# ԲԵՐՔԱՀԱՎԱՔԻ ՕՐԵՐԻՆ

Ս. ԳԱԼՍՏՅԱՆ

Բերքահավաքի այս օրերին Սպիտակի շրջանի Սարահարթի, Գոգարանի կոլտնտեսությունների և Նալբանդի սովխոզի սկզբնական պարտիական կազմակերպությունները ուժեղացրել են աշխատավորության լայն շրջանում կատարվող քաղաքական-մասսայական աշխատանքը։ Այդ գյուղերի ավելի քան 50 ագիտատորներ սիստեմատիկաբար կոլտնտեսականների և մեխանիզատորների համար քաղաքական թեմաների շուրջ և հատկապես բերքը ժամանակին ու անկորուստ հավաքելու մասին զրույցներ են ունենում։ Դաշտերում, կալերում, ամենուրեք, որտեղ բերքահավաք է կատարվում, միշտ կարելի է հանդիպել ագիտատորների, որոնք ագիտացիայով և մանավանդ աշխատանքում իրենց անձնական օրինակով ոգևորում են կոլտնտեսականներին։

Ճիշտ կոմպլեկտավորելով ագիտկոլեկտիվները, պարտիական կազմակերպությունները դրանով չսահմանափակվեցին,



որովհետև դա գործի միայն սկիզբն է։ Ագիտացիոն-մասսայական աշխատանքների ամենօրյա կոնկրետ ղեկավարումը, ագիտատորների աշխատանքին ճիշտ ուղղություն տալը և նրանց հետ տևական աշխատանք տանելը դարձավ այն հիմնական վճռող նախապայմանը, որի կենսագործման միջոցով բերքահավաքի ընթացքում ավելի ակտիվ կերպով սկսեցին գործել ագիտկոլեկտիվները։ Դեռ բերքահավաքի նախապատրաստման օրերին սկզբնական պարտիական կազմակերպությունների ժողովներում և ապա ագիտկոլեկտիվների սեմինարներում ու խորհրդակցություններում հանգամանորեն քննարկվեցին բերքահավաքի և հացամթերումների ժամանակ աշխատավորության շրջանում քաղաքական-մասսայական աշխատանքները ուժեղացնելու հարցը և այդ ուղղությամբ ագիտատորների խնդիրները, նշվեցին գործնական միջոցառումներ քաղաքական աշխատանքի հետագա ուժեղացման համար։ Նախապատրաստական միջոցառումները բերքահավաքի հենց առաջին իսկ օրից տվեցին իրենց դրական արդյունքները։ Ագիտատորները զրույցների միջոցով աշխատավորությանը պարզաբանում են սոցիալիստական գյու-

ղատնտեսության հետագա վերելքի միջոցառումների մասին պարտիայի Կենտրոնական Կոմիտեի ընդունած պատմական որոշումները և սիստեմատիկաբար մասսայականացնում գյուղատնտեսության առաջավորների փորձը։

Հաշվի առնելով այն հանգամանքը, որ քաղաքական ագիտացիայի ուժը նրա բարձր գաղափարայնության, նպատակասլացության և կյանքի հետ ունեցած սերտ կապի մեջ է, պարտիական կազմակերպությունները լուրջ աշխատանք են կատարում այդ ուղղությամբ։ Այս տեսակետից առանձնապես աշխատանքի հարուստ փորձ ունեն Սարահարթի, կոլտնտեսային և Նալբանդի սովխոզի սկզբնական պարտիական կազմակերպությունների կից ագիտկոլեկտիվները։ Այստեղ աշխատավորների մեջ ագիտատորների կատարած քաղաքական աշխատանքի շնորհիվ խոշոր չափով բարձրացել է կոլտնտեսականների աշխատանքային ակտիվությունը։ Վերը նշված գյուղերում հաջողությամբ են ընթանում բերքահավաքն ու հացամթերումները։ Ունկնդիրների համար առանձնապես բովանդակալից և հետաքրքիր զրույցներ են անցկացնում Սարահարթի կոլտնտեսության դաշտավարա-



կան 2-րդ և 3-րդ բրիգադաների ագիտատորներ Հ. Քոթանչյանը և Ա. Գրիգորյանը, Նալբանդի սովխոզի ագիտատոր Ա. Մարգարյանը, Գոգարանի կոլտնտեսության դաշտավարական 4-րդ բրիգադայի ագիտատոր Ց. Ծղիկյանը և ուրիշներ։

Վերջերս տեղի ունիցած հերթական զրույցներից մեկի ժամանակ Սարահարթի կոլտնտեսության ագիտատոր Ա. Գրիգորյանը ունկնդիրներին պատմեց ոչ միայն բերքը ժամանակին և անկորուստ հավաքելու կարևորության մասին, այլև կոնկրետ օրինակներով պարզաբանեց առաջավոր հնձվորների աշխատանքի դրական փորձը։

Սոցիալիստական դաշտերի առատ բերքը սեղմ ժամկետում և անկորուստ հավաքելու գործում վճռական դեր են կատարում մեխանիզատորները։ Ագիտատորները վերջերս ուժեղացրել են մեխանիզատորների շրջանում կատարվող ագիտացիոն աշխատանքը, որի շնորհիվ ավելի բարելավվեց գյուղատնտեսական տեխնիկայի օգտագործումը։

Հետևելով երկրի առաջավոր կոմբայնավարների օրինակին և ընդունելով Ախուրյանի շրջանի կոմբայնավարների հայրենասիրական կոչը, կոմբայնավարներ Ս. Հով-

նեփյանը (Սարահարթ) և Ե. Գալոյանը (Գոգարան) աշխատանքային հինգ օրում ինքնագնաց կոմբայնով յուրաքանչյուրը 50—55 հեկտար հացահատիկ հնձեցին, պլանով նախատեսված 30 հեկտարի դիմաց։

Իրենց լավագույն աշխատանքով կոմբայնավարներից ետ չեն մնում նաև կալսիչավարներ Ն. Հովսեփյանը, Խ. Աշուղյանը և Վ. Նասիլյանը, որոնք օրվա կալսման առաջադրանքը կրկնակի չափով են կատարում։

Զրույցից բացի ագիտատորները լայնորեն օգտագործում են նաև քաղաքական ագիտացիայի մյուս ձևերը. օրինակ, ցուցադրական ագիտացիան։ Դաշտում, կալերում, կալսիչների և կոմբայնավարների մոտ, չորանոցներում փակցված են պլակատներ ու լոզունգներ, որոնք աշխատավորներին կոչ են անում պատվով կատարել պետության առաջին պատվիրանը՝ հացամթերումները, սեղմ ժամկետում ու բարձր որակով անցկացնել բերքահավաքը։ Կան նաև ցուցափեղկեր, առաջավորների տախտակներ։ Կոլտնտեսություններում սիստեմատիկաբար լույս են տեսնում պատի թերթերը, իլյիչովկաները, ինչպես նաև «ո՞վ է այսօրվա առաջավորը» վերնագիր կրող մարտական



թերթիկներ, որոնց միջոցով լայնորեն լուսաբանվում է բերքահավաքի ընթացքը, խրախուսվում են արտադրության առաջավորները և քննադատվում թերությունները։ Բերքահավաքի այս օրերին իրենց աշխատանքներն աշխուժացրել են նաև վերը նըշված գյուղերի ակումբներն ու գրադարանները, որոնք ամբողջ կուլտ-լուսավորական աշխատանքը վերակառուցել են բերքահավաքն ու հացամթերումները կազմակերպված ու սեղմ ժամկետում կատարելու պատասխանատու գործին համապատասխան։ ՀՍՍՌ Կուլտուրայի մինիստրության և շրջկուլտուրայի բաժնի գեղարվեստական ագիտբրիգադաները լինելով կոլտնտեսություններում և սովխոզի դաշտում, կազմակերպել են մի շարք զեկուցումներ և համերգներ աշխատողների համար։ Նրանց համար ելույթներ են կազմակերպվում նաև ակումբներին կից գեղարվեստական ինքնագործ խմբակները։ Բնակչության համար սիստեմատիկաբար ցուցադրվում են կինոնկարներ։ Բացի ագիտատորներից, ունկնդիրների առջև հանդես են գալիս նաև գյուղատնտեսության առաջավորները, հատկապես Համամիութենական գյուղատնտեսական ցուցահանդեսի մասնակիցները, որոնք

*իրենց փորձի և տպավորությունների մասին հանգամանորեն պատմում են ունկնդիրներին: Հետաքրքիր էր լսել առաջավոր հրնաձվորներ Պ. Գևորգյանի, Վ. Մարկոսյանի, Տ. Կասեմյանի (Սարահարթից), Մ. Մարտիրոսյանի, Յ. Ամիրյանի, Տ. Գալոյանի (Գոգարանից), Ս. Կյուրեղյանի, Մ. Ժամկոչյանի, Խ. Զարչյանի (Նալբանդի սովխոզ) և ուրիշների ելույթները իրենց աշխատանքի փորձի մասին:*

*Պարտիական կազմակերպությունները և նրանց կողմից գլխավորվող ագիտկոլեկտիվները իրենց առջև խնդիր են դրել չբավարարվել ձեռք բերածով, բերքահավաքի օրերին ավելի ուժեղացնել քաղաքական-բացատրական աշխատանքը, այն դարձնել ավելի մարտական ու նպատակասլաց:*

---

ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍԱԿԱՆ ԹԵՄԱՆԵՐ

---

# ՊԱՅՔԱՐ ԲԵՐՔԻ ԿՈՐՈՒՍՏՆԵՐԻ ԴԵՄ

Ռ. ԱԲՐԱՀԱՄՅԱՆ
Հայկական ՍՍՌ Գյուղատնտեսության մինիստրի տեղակալ

*Ռեսպուբլիկայի կոլտնտեսային աշխատավորները այս տարի բերքահավաքը կատարում են նոր պայմաններում: Կոլտնտեսությունների գերակշռող մասը ՄՏ կայաններից գնել է գյուղատնտեսական տեխնիկա և աշխատում է սեփական մեքենաներով: Այս տարի ռեսպուբլիկայի գյուղատնտեսական մեքենաների պարկը համալրվել է 250 նոր հացահատիկային կոմբայնով, տարբեր մարկաների 400 տրակտորով և այլ գյուղատընտեսական մեքենաներով ու կցվող գործիքներով:*

*Այս ամենը լավագույն պայմաններ ստեղծեց բերքահավաքը ավելի կազմակերպված ու սեղմ ժամկետներում կատարելու համար:*

*Չնայած վաղ գարնանը եղած կլիմայա-*

կան ու նպաստավոր պայմաններին, ռեսպուբլիկայի կոլտնտեսությունների աճեցրել են տեխնիկական և մյուս կուլտուրաների հարուստ բերք։ Սակայն լավ բերք աճեցնելը դեռ բավական չէ։ Բարձր բերքի համար մղվող պայքարի արդյունքները հաշվում են այն ժամանակ, երբ այդ բերքը գտնվում է պահեստներում։ Ահա թե ինչու ռեսպուբլիկայի գյուղատնտեսության աշխատողները այս օրերին լարել են իրենց բոլոր ուժերը բերքահավաքն անկորուստ կատարելու, դաշտում եղած հանրային հարստությունը շտեմարանները փոխադրելու համար։

Մեր մի շարք շրջաններ ու շատ կոլտնտեսություններ բերքահավաքի առաջին իսկ օրերից բարձր կազմակերպվածությամբ կատարեցին հացահատիկային կուլտուրաների բերքահավաքը, թույլ չտալով կորուստներ։ Նրանք ապահովեցին բարձր բերքի ստացումը։ Այսպես, Հոկտեմբերյանի, Վեդու, Էջմիածնի, Շահումյանի շրջանների կոլտնտեսությունները միջին հաշվով յուրաքանչյուր հեկտարից հավաքեցին ու պահեստ փոխադրեցին 16—22 ցենտներ հացահատիկ։

Ավելի բարձր ցուցանիշների հասան Էջմիածնի շրջանի Մուղան, Գրամփա, Սամաղար, Ն. Ջեյվա, Հոկտեմբերյանի շրջանի Հոկտեմբեր, Նորապատ, Արմավիր, Արտաշատի



շրջանի Վերին Արտաշատ, Մխչյան, Վեդու շրջանի Այգավան, Արմաշ, Շիրազլու և ուրիշ գյուղերի կոլտնտեսություններ, որոնք հեկտարից ստացան 28-31 ցենտներ բերք։

Վերոհիշյալ շրջաններն ու կոլտնտեսությունները այդպիսի հաջողությունների չէին հասնի, եթե բոլոր միջոցներով չպայքարեին կորուստների դեմ, իսպառ չվերացնեին դրանք։

Սովորաբար բերքի կորուստ է տեղի ունենում այն ժամանակ, երբ բերքահավաքը ուշ են սկսում, ձգձգումներով, լավ չեն կազմակերպում աշխատանքը, ճիշտ և արդյունավետ չեն օգտագործում գյուղատնտեսական տեխնիկան, մեքենաներն ու գործիքները, փոխադրական միջոցները, ժամանակին կարգի չեն բերում կալերն ու պահեստները և այլն։

Այժմ համառոտակի խոսենք այդ պատճառներից յուրաքանչյուրի մասին։ Ինչպես ասացինք բերքի ամենամեծ կորուստ տեղի է ունենում այն դեպքում, երբ բերքահավաքը ձգձգվում է, օրինակ, հացահատիկի հասունացած արտը ժամանակին չհնձելու դեպքում. առաջին 5 օրում կորչում է նրա բերքի 25 տոկոսը, 10—15 օրում՝ 50 տոկոսը։ Աշտարակի շրջանի Կոշ գյուղի կոլտնտեսությունում, որտեղ հնձի առաջին օրերին հեկտարից ստացան 12—13 ցենտներ

հացահատիկ, իսկ բերքահավաքը ձգձգելու հետևանքով, 10 օրից հետո նույն դաշտերի բերքատվությունը խիստ կերպով իջավ և հեկտարից կազմեց 5—6 ցենտներ։

Նման կորուստներից խուսափելու ամենալավ ու փորձված միջոցը դա անջատ բերքահավաքի կազմակերպումն է, որն այս տարի խոշոր մասշտաբներով կիրառվեց մեր երկրում։ Այս եղանակի գլխավոր առավելությունը այն է, որ անջատ բերքահավաք կարելի է կատարել՝ առանց հաշվի առնելու եղանակը, նույնիսկ անձրևի ժամանակ։ Քաղելով դեռևս լրիվ չհասունացած հացահատիկը և այն ծերեր դնելով, ամբողջովին կանխվում է հատիկների և հասկերի թափումը, մինչև 10 օրով առաջ է ընկնում բերքա հավաքը։ Հնձիչներով հնձված և ծեր դրված հացահատիկի համար սարսափելի չէ նաև կարկուտը։

Այս տարի մեր ռեսպուբլիկայում անջատ եղանակով պետք է հնձվի 3.000 հեկտար հացահատիկ, սակայն այդ առաջադրանքը շատ անբավարար է կատարվում։ Այդ եղանակով դեռևս ոչ մի հեկտար հունձ չեն կատարել ռեսպուբլիկայի այնպիսի հացահատիկային շրջաններ, ինչպիսիք են, օրինակ, Սևանը, Բասարգեչարը և Մարտունին։

Անջատ բերքահավաքի ունեցած առավե-



լությունը ցույց տալու համար կարելի է բերել հետևյալ օրինակը։ Աղինի շրջանի Բադրավան գյուղի կոլտնտեսությունը անջատ եղանակով հնձած 70 հեկտար դաշտի յուրաքանչյուր հեկտարից ստացավ 12—13 ցենտներ հացահատիկ, իսկ սովորական կոմբայնային հունձ կատարելով, նույն դաշտի ամեն մի հեկտարից հավաքեց 6—7 ցենտներ բերք։

Կոմբայնային բերքահավաքի ժամանակ կորուստներից խուսափելու առաջին նախապայմանը դա կոմբայնը մշտապես սարքին վիճակում պահելն է։ Մյուս պայմանը բերքահավաքի ագրեգատը նորմալ ռեժիմով աշխատեցնելն է, այսինքն կոմբայնավարը պետք է կարողանա ճիշտ ընտրել ագրեգատի արագությունը՝ ելնելով հացահատիկի բերքից, հատիկների հասունության աստիճանից, դաշտի դիրքից և այլ պայմաններից։

Կորուստները պակասեցնելու լավ միջոց է հանդիսանում գիշերային հնձի կազմակերպումը, որովհետև ինչպես հատիկների, այնպես և հասկերի թափում գիշերվա հով եղանակին շատ ավելի քիչ է տեղի ունենում, քան ցերեկը։

Ինչպես հայտնի է, մեր ռեսպուբլիկայի ռելյեֆն այնպիսին է, որ ամենուրեք հնարավոր չէ կոմբայնային բերքահավաք կատա-

բել։ Հացահատիկային կուլտուրաների 40—45 տոկոսի բերքահավաքը կոլտնտեսությունները կատարում են ձեռքով։ Այս եղանակով բերքահավաք կատարելիս կորուստներն ավելի մեծ են լինում, քան մեքենայական բերքահավաքի դեպքում։ Այդ կորուստներից խուսափելու համար կոլտնտեսությունները պետք է լավագույն ձևով կազմակերպեն այն։ Անհրաժեշտ է աշխատող ձեռքերը և արտադրության միջոցները դասավորել այն հաշվով, որ հացահատիկային յուրաքանչյուր դաշտի բերքահավաքը սկսվի ճիշտ ժամանակին և ավարտվի աշխատանքային 8—10 օրում։ Աշտարակի շրջանի Եղվարդ գյուղի կոլտնտեսությունում ձեռքով բերքահավաքը վատ կազմակերպելու պատճառով, բերքի 15—20 տոկոս կորուստ տեղի ունեցավ։

Կորուստներից խուսափելու համար անհրաժեշտ է հնձին զուգընթաց կատարել խուրձկապ և քյուլաշն առանց ուշացնելու փոխադրել կալ, խզում թույլ չտալով հնձի և կալսման միջև։

Որքան էլ հաջող կատարվի հունձը մեքենայով, թե ձեռքով, ամենուրեք և անպայման պետք է կազմակերպել հասկահավաք։ Մինչդեռ մի շարք կոլտնտեսություններում աչքաթող է արված կորուստների դեմ պայքարելու այս կարևորագույն միջոցը։



Միանգամայն դատապարտելի պետք է համարել նաև այն երևույթը, երբ առանձին կոլտնտեսությունների և սովխոզների ղեկավարներ առանց հասկահավաք կատարելու, անասուններին բաց են թողնում արտերում արածելու։

Մեր ռեսպուբլիկայի կոլտնտեսությունները և սովխոզները այս տարի զգալի քանակությամբ եգիպտացորեն են մշակում։ Բոլոր միջոցները պետք է ձեռք առնել այդ կուլտուրայի բերքահավաքի ժամանակ կորուստներից խուսափելու համար։ Այստեղ նույնպես վճռական նշանակություն ունեն բերքահավաքի ժամկետները։ Գիտությունը և առաջավոր պրակտիկան ապացուցել են, որ եգիպտացորենի լավագույն կերը (ինչպես որակական, այնպես և քանակական առումով) ըստացվում է այն դեպքում, երբ բերքահավաքը կատարվում է կարճ ժամկետներում՝ 8—10 օրում, կողրերի կաթնամոմային հասունությունից մինչև մոմային հասունությունն ընկած ժամանակամիջոցում։

Ռեսպուբլիկայի կոլտնտեսություններն այս տարի աճեցրել են ծխախոտի բարձր բերք, սակայն այդ կուլտուրայի բերքահավաքն ամենուրեք անբավարար է ընթանում։ Իջևանի շրջանի կոլտնտեսություններն, օրինակ, մինչև օգոստոսի 20-ը մեկ միլիոն թելա-

մետրով պակաս ծխախոտ էին հավաքել, քան անցյալ տարվա նույն ժամանակամիջոցում։

Ծխախոտի բերքահավաքի ձգձգումը նույնպես բերքի մեծ կորուստների պատճառ է դառնում։ Բույսի վրայից հասունացած տերևները չքաղելու պատճառով ուշանում է մյուս տերևների հասունացումը, հետևապես և ձգձգվում է նրանց քաղը։ Մինչդեռ մեր ռեսպուբլիկայի ծխախոտագործները սեփական փորձով գիտեն, թե բերքի ինչպիսի կորուստներ են տեղի ունենում վաղահաս ցրտերի պատճառով։.

Ծխախոտի կորուստներ են տեղի ունենում նաև չորանոցներում։ Հարկավոր է հավաքված տերևներն առանց ուշացնելու շարել, չորացնել, հակավորել ու հանձնել պահեստ։ Մշտապես պետք է հիշել, որ ծխախոտի չորացման այժմյան մեկ օրը փոխարինում է հետագա 2—3 օրվա։

Շուտով ռեսպուբլիկայում կսկսվի նաև բամբակի բերքահավաքը։ Այժմյանից պետք է լավագույն ձևով նախապատրաստվել դրան։ Կոլտնտեսությունները պետք է մոբիլիզացնեն բոլոր ուժերը բերքն անկորուստ, բամբակի մինչև վերջին կնգուղը հավաքելու համար։ Կոլտնտեսականները պետք է ապահոված լինեն գոգնոցներով, բարդաններով,



պետք է նորոգվեն, մաքրվեն ու կարգի բերվեն ծածկերը, հրապարակները, կշեռքները, անհրաժեշտ ինվենտարը։

Բերքի կորուստների դեմ պայքարելու գործում շատ բան կարող են անել ագիտատորները, որոնք առաջավոր փորձի մասսայականացմամբ պետք է օգնեն գյուղի աշխատավորներին՝ շտեմարանները փոխադրելու նրանց աճեցրած յուրաքանչյուր կիլոգրամ հացահատիկը, ծխախոտը, բամբակը, խաղողը և մյուս կուլտուրաները։

---

# ԱՆԸՆԴՀԱՏ ԲԱՐՁՐԱՆՈՒՄ Է ԱՇԽԱՏԱՎՈՐՆԵՐԻ ԲԱՐԵԿԵՑՈՒԹՅՈՒՆԸ

(Թվեր և փաստեր)

Այս տարվա անցած ամիսները հայտնի են ոչ միայն ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության բնագավառում ձեռք բերված վիթխարի հաջողություններով, այլև աշխատավորների նյութական բարեկեցության բարձրացմամբ։ Ահա թվեր և փաստեր այդ մասին։

★ Միայն այս տարվա առաջին կիսամյակում մոտ 26 միլիոն մարդ օգտագործել է իր հերթական արձակուրդը, որ ամեն տարի տրվում է բոլոր բանվորներին ու ծառայողներին՝ պահպանելով աշխատավարձը։

★ 1958 թվականի առաջին կիսամյակում բնակչությունը նպաստների, կենսաթոշակների, ուսանողական թոշակների, բժշկական ձրի օգնության և այլ վճարումների ձևով պետության հաշվին ստացել է 106 միլիարդ ռուբլի, կամ 6 տոկոսով ավելի, քան 1957 թվականի առաջին կիսամյակում։



★ Շարունակվում է արդյունաբերության բանվորների ու ծառայողների փոխադրումը կրճատված աշխատանքային օրվա։ Կրճատված աշխատանքային օրվա անցնելը կատարվում է առանց բանվորների ու ծառայողների աշխատավարձը պակասեցնելու։

★ 1958 թվականի հունվարի մեկից վերացվեց ամուրիների, միայնակ և սակավանդամ ընտանիք ունեցող քաղաքացիների վրա դրված հարկի գանձումը երեխաներ ունեցող բոլոր անձանցից, ինչպես նաև միայնակ կանանցից։

★ Այս տարվա հունվարի 1-ից պետությանը գյուղատնտեսական մթերքների պարտադիր հանձնումներից ազատվեցին կոլտնտեսականների, ինչպես նաև բանվորների ու ծառայողների անձնական օժանդակ տնտեսությունները։

★ Անցած վեց ամսում խնայողական դրամարկղներում բնակչության ավանդները ավելացել են մոտ 4 միլիարդ ռուբլի գումարով։

★ Գնալով տարեցտարի բարձրանում է բնակչության գնողունակությունը։ Պետական և կոոպերատիվ առևտրի մանրածախ ապրանքաշրջանառության ընդհանուր ծավալը (չհաշված Ցենտրոսոյուզի պարենային

ապրանքների կոմիսիոն առևտուրը) այս
տարվա առաջին կիսամյակում կազմեց 314,5
միլիարդ ռուբլի և անցյալ տարվա նույն ժա-
մանակաշրջանի համեմատությամբ աճեց ա-
վելի քան 22 միլիարդ ռուբլով։

★ Մեծ չափերով ավելացել է սննդամը-
թերքների, գործվածքեղենի ու հագուստե-
ղենի, կահույքի, ձեռքի ժամացույցների,
հեռուստացույցների, սառնարանների, մար-
դատար մեքենաների և շատ ուրիշ ապրանք-
ների վաճառքը։

★ Բնակչությանը մսի և մսամթերքների
վաճառքը ավելացել է 113 հազար տոննա-
յով, կենդանական յուղինը՝ 35 հազար տոն-
նայով, իսկ ընդամենը կաթինը և կաթնա-
մթերքինը՝ 1 միլիոն 131 հազար տոննա-
յով։

★ Աշխատավորների նյութական բարեկե-
ցության բարձրացման շնորհիվ մեծ չափերով
ավելացել է բնակչությանը և կոլտնտեսու-
թյուններին արտադրական գործածության
ապրանքների վաճառքը։ Այս տարվա առաջին
կիսամյակում, անցյալ տարվա նույն ժա-
մանակաշրջանի համեմատությամբ, ցեմեն-
տի վաճառքը ավելացել է 19 տոկոսով, շի-
ֆերինը՝ 26 տոկոսով, փափուկ ծածկինը՝ 22
տոկոսով, մեխինը՝ 12 տոկոսով, լուսամուտի



ապակունը՝ 26 տոկոսով, անտառանյութինը
և ստանդարտ տներինը՝ 33 տոկոսով։

★ Անցած վեց ամսվա ընթացքում կինո-
սեանսերն այցելած հանդիսատեսների թիվը
աճել է ավելի քան 135 միլիոնով։ Միաժա-
մանակ այս տարվա առաջին կիսամյակի
վերջին կինոսարքերի քանակը, անցյալ տար-
վա համապատասխան ժամանակաշրջանի
համեմատությամբ, աճեց ավելի քան 6 հա-
զարով։

★ Խոշոր աշխատանք է կատարված բնակ-
չությանը բնակարաններով ապահովելու
ուղղությամբ։ Միայն այս տարվա առաջին
կիսամյակում կառուցվել և շահագործման է
հանձնվել 12 միլիոն քառակուսի մետր տա-
րածությամբ բնակելի տներ։ Այդ նշանակում
է 240 հազարից մինչև 400 հազար ընտանի-
քի բավարարել 2—3 սենյակ ունեցող բնա-
կարաններով։ Բացի այդ, մեծ քանակությամբ
բնակելի տներ են կառուցել ու շահագործման
հանձնել պետական ձեռնարկությունները ու
կազմակերպությունները, ինչպես նաև բնակ-
չությունը՝ սեփական միջոցներով և պետա-
կան վարկի օգնությամբ։

★ Ժողովրդի նյութական բարեկեցության
բարձրացման բնագավառում խոշոր հաջո-
ղություններ ունի նաև մեր ռեսպուբլիկան։
Բնակարանային շինարարության մեջ պետա-

կան կապիտալ ներդրումների ծավալը այս տարվա առաջին կիսամյակում, անցյալ տարվա նույն ժամանակաշրջանի համեմատությամբ աճեց 34 տոկոսով։

★ Անցած վեց ամսում կառուցվեցին և շահագործման հանձնվեցին 60 հազար քառակուսի մետր ընդհանուր տարածությամբ բնակելի շենքեր, կամ 48 տոկոսով ավելի, քան անցյալ տարվա առաջին կիսամյակում։

★ Բնակարանային շինարարությունը բուռն թափով առաջ է գնում հատկապես մեր ռեսպուբլիկայի մայրաքաղաք Երևանում։ Եթե 1926 թվականին քաղաքի բնակելի ֆոնդը կազմում էր ընդամենը 300 հազար քառակուսի մետր, ապա այժմ այն հասել է 1 միլիոն 800 հազարի։

★ Երևանում այս տարի բնակարանային շինարարության վրա ծախսվելու է 186 միլիոն ռուբլի։

★ Տարեցտարի ռեսպուբլիկայի քաղաքներում և գյուղերում ծավալվում է ապրանքաշրջանառությունը, որովհետև անընդհատ բարձրանում է բնակչության գնողունակությունը։

---



# ԱՐԴՅՈՒՆԱԲԵՐՈՒԹՅԱՆ ԶԱՐԳԱՑՈՒՄԸ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ԴԵՄՈԿՐԱՏԻԱՅԻ ԵՐԿՐՆԵՐՈՒՄ

ԼԵՀԱՍՏԱՆ։ Արդյունաբերական արտադրանքի 1957 թվականի համախառն արտադրանքի պլանը կատարվել է 105,6 տոկոսով։ 1956 թվականի համեմատությամբ սոցիալիստական սեկտորի արդյունաբերական արտադրանքը աճել է 9,6 տոկոսով, այդ թվում արտադրության միջոցների արտադրությունը՝ 9,2 տոկոսով և սպառման առարկաների արտադրությունը՝ 10 տոկոսով։

Արդյունաբերության արտադրանքի առանձին տեսակների արտադրությունը 1957 թվականին, 1956 թվականի համեմատությամբ, բնութագրվում է հետևյալ կերպ. չուգուն՝ 105 տոկոս, պողպատ՝ 105,8 տոկոս, պրոկատ՝ 108,2 տոկոս, կոքս՝ 103,7 տոկոս, էլեկտրաէներգիա՝ 108,5 տոկոս, կաուստիկ սոդա՝ 110,9 տոկոս, ազոտային պարարտանյութեր՝ 114,6 տոկոս, ֆոսֆորային պարարտանյութեր՝ 112 տոկոս, ավտոդողեր՝ 133,4 տոկոս, մետաղամշակման

հաստոցներ՝ 114,3 տոկոս, բեռնատար ավտոմոբիլներ՝ 89,9 տոկոս, մարդատար ավտոմոբիլներ՝ 167,9 տոկոս, գյուղատնտեսական մեքենաներ՝ 113,2 տոկոս, ցեմենտ՝ 111,2 տոկոս, բամբակյա գործվածքներ՝ 102,4 տոկոս, կոշկեղեն՝ 111,4 տոկոս, ռադիոընդունիչներ՝ 123,6 տոկոս, հեռուստացույցներ՝ 717,8 տոկոս, միս՝ 114,2 տոկոս, ձկնեղեն՝ 104,6 տոկոս, կենդանական յուղ՝ 126,3 տոկոս, շաքար՝ 136,3 տոկոս։

1957 թվականին պետական կապիտալ ներդրումները 3 տոկոսով ավելի են եղել, քան 1956 թվականին, հատկապես կապիտալ ներդրումները արագորեն աճել են շինանյութերի արդյունաբերության մեջ (1956 թվականի համեմատությամբ 50 տոկոսով)։ Շահագործման են հանձնվել արդյունաբերական մի շարք կարևոր օբյեկտներ։

Էլեկտրակայանների հզորությունը 1957 թվականին ավելացել է 513 հազար կիլովատով։ Լրիվ շահագործման է հանձնվել Վարշավայի ջերմաէլեկտրակայանը, որը հիմնականում սարքավորվել է Սովետական Միությունից ստացված սարքավորումներով, արագ թափով շարունակվում է Լոձի ջերմաէլեկտրակայանի և Բոլեսլավ Բերուտի անվան մետալուրգիական կոմբինատի նոր



ջերմաէլեկտրակայանի շինարարությունը Չենստոխովում։

Շահագործման են հանձնվել մի շարք նոր երկաթհանքեր և ածխահորեր։ Նավթային արդյունաբերության մեջ այլ ձեռնարկությունների հետ միասին Տշեբինի նավթաթորման գործարանում շահագործման է հանձնվել մի նոր ցեխ։ Լենչիցի քաղաքի մոտ հայտնաբերվել են նոր երկաթհանքեր։

Երկրում լայն զարգացում է ստացել նավաշինական արդյունաբերությունը։ Շահագործման է հանձնված 4 նավ, յուրաքանչյուրը 10 հազար տոննա ջրատարողությամբ, 12 այլ նավեր՝ 5 հազար տոննա ջրատարողությամբ, 11 ածխանավեր՝ 3,2 հազար տոննա, 16 տրաուլեր՝ 500-ական տոննա, 7 տրաուլեր 450-ական տոննա ջրատարողությամբ և այլն։

Զգալիորեն աճել է լեհական քիմիական արդյունաբերության արտադրական կարողությունը։ 1957 թվականին շարք են մտել սոդայի գործարանը Յանիկովոմ, պոլիքլորվինիլ արտադրող գործարանը և քիմիական այլ նյութեր արտադրող ուրիշ գործարաններ ու ցեխեր։ Շահագործման է հանձնվել Լեհաստանում ամենախոշոր ցե-

մենտի գործարանը Օգրոդցենզեյում տարեկան 500 հազար տոննա արտադրական կարողությամբ։

Զգալիորեն աճել է Լեհաստանի կողմից մյուս երկրներին ցույց տրվող տեխնիկական օգնությունը (ներառյալ սարքավորումների մատակարարումը)։ Լեհաստանը Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկայում կառուցում է ածխահորեր և շաքարի գործարան, Եգիպտոսում՝ նավթային 19 պահեստներ և այլն։

*ՌՈՒՄԻՆԻԱ։* Արդյունաբերական արտադրանքի պլանը սոցիալիստական սեկտորում կատարված է 106,7 տոկոսով, 1956 թվականի համեմատությամբ արդյունաբերության համախառն արտադրանքը ավելացել է 8,5 տոկոսով, ընդ որում արտադրության միջոցների արտադրությունը՝ 11 տոկոսով և սպառման միջոցների արտադրությունը՝ 5,1 տոկոսով։

1957 թվականին շահագործման են հանձնըվել արտադրական մի շարք օբյեկտներ՝ խողովակագլանման գործարանը Ռոմանում, երկրորդ կոքսային մարտկոցը և էլեկտրական երկու վառարան՝ Խունեդուարի մետալուրգիական կոմբինատում։

Նշանակալից չափով ընդլայնվել են ջեր-



մաէլեկտրակայանները Պորոշանում և Բորզեշում, կառուցվել են 110 կիլովատ կարողությամբ էլեկտրահաղորդման նոր գծեր՝ Օցելուլ-Ռոշա-Տիմիշոարա և Ռոման-Յասի ուղղություններով։ Կառուցվել են նաև 315 կիլոմետր ընդհանուր երկարությամբ գազամուղներ և նավթամուղներ։

Շարք են մտել քիմիական նոր գործարաններ, շահագործման են հանձնվել շինանյութերի և սննդարդյունաբերության բազմաթիվ նոր ձեռնարկություններ։ 1957 թվականին յուրացվել է արդյունաբերական արտադրանքի մի շարք նոր տեսակներ՝ տրանսֆորմատորներ, 50 տոննա բեռնատարողությամբ երկաթուղային ցիստերններ, տրակտորի մի նոր տեսակ և այլն։

*ՉԵԽՈՍԼՈՎԱԿԻԱ։* 1957 թվականին արդյունաբերության համախառն արտադրանքի պլանը կատարվել է 102,3 տոկոսով։ 1956 թվականի համեմատությամբ արդյունաբերական արտադրանքը ավելացել է 10,2 տոկոսով, ընդ որում արտադրական միջոցների արտադրությունը՝ 9,7 տոկոսով և սպառման առարկաների արտադրությունը՝ 10,9 տոկոսով։ Երկրում արդյունաբերական արտադրանքի ընդհանուր ծավալը, 1948 թվականի համեմատությամբ, աճել է 2,7 անգամ։

Արդյունաբերական կարևոր տեսակների արտադրությունը 1957 թվականին, 1956 թվականի համեմատությամբ հետևյալ պատկերն է ներկայացնում՝ չուգուն՝ 109 տոկոս, պողպատ՝ 106 տոկոս, պրոկատ՝ 107 տոկոս, երկաթահանք՝ 110 տոկոս, քարածուխ 103 տոկոս, գորշ ածուխ՝ 110 տոկոս, էլեկտրաէներգիա՝ 107 տոկոս, ազոտային պարարտանյութ՝ 115 տոկոս, մետալուրգիական սարքավորումներ՝ 130 տոկոս, մետաղամշակման հաստոցներ՝ 115 տոկոս, ավտոմատներ և կիսաավտոմատներ՝ 178 տոկոս, խառատային դազգյահներ՝ 158 տոկոս, ավտոբուսներ՝ 110 տոկոս, տրակտորներ՝ 118 տոկոս, ջերմաքարշեր՝ 27 անգամ, էլեկտրաքարշեր 138 տոկոս, ցեմենտ 117 տոկոս, կաշվի կոշկեղեն՝ 129 տոկոս, հեռուստացույցներ՝ 157 տոկոս, միս՝ 107 տոկոս, շաքար՝ 134 տոկոս։

Արտադրության մեջ զբաղված բանվորների ընդհանուր թիվը հասել է 1 միլիոն 991 հազար մարդու, այդ թվում արտադրության մեջ անմիջապես աշխատողները՝ 1 միլիոն 554 հազար մարդ, ինժեներա-տեխնիկական աշխատողների թիվը հասնում է 220 հազար մարդու, աշխատանքի արտադրողականությունը ավելացել է 6 տոկոսով։

---

# ԲՈՒԼՂԱՐԻԱՅԻ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱՅԻ ՀԱՋՈՂՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

**(Բուլղարիայի ազատագրման 14-րդ տարեդարձի առթիվ)**

**(Թվեր և փաստեր)**

Տասնչորս տարի առաջ ազատագրվելով ֆաշիստական լծից, բուլղար ժողովրդի համար ազատ կյանքի նոր ուղի բացվեց։ Սերտորեն համագործակցելով սոցիալիստական լագերի երկրների հետ Բուլղարիայի Ժողովրդական Ռեսպուբլիկան վիթխարի հաջողությունների հասավ ժողովրական տնտեսության բոլոր բնագավառներում։ Ահա թվեր և փաստեր այդ մասին։

★ Անցյալ տարի արդյունաբերական արտադրանքի թողարկումը, 1939 թվականի համեմատությամբ, ավելացավ մոտ 8 անգամ։

★ 1957 թվականին գունավոր մետաղների հանույթը և այդ մետաղների թողարկումն ավելացավ 2—3 անգամ։

★ Խոշոր հաջողություններ են ձեռք բերվել մեքենաշինության բնագավառում։ Միայն անցյալ տարի մեքենաշինության և մետաղամշակման արտադրանքն ավելացավ 2,4

անգամ։ Այդ նույն ժամանակաշրջանում արդյունահանվեց 12 միլիոն տոննա քարածուխ։

★ Արդյունաբերության խոշորագույն հաջողություններից մեկն էլ այն է, որ անցյալ տարի սպառման առարկաների արտադրությունն ավելացավ մոտ 69 տոկոսով։

★ 1958 թվականի տվյալներով ժողովրդական տնտեսության սոցիալիստական սեկտորը այժմ բաց է թողնում արդյունաբերական արտադրանքի 98 տոկոսը։

★ Գնալով վարգացման փայլուն հեռանկարներ են բացվում ժողովրդական ռեսպուբլիկայի առջև։ 1962 թվականին երկրում կարդյունահանվի 19 միլիոն 215 հազար տոննա կամ 1957 թվականի համեմատությամբ 62 տոկոսով ավելի քարածուխ։

★ 1962 թվականին տեքստիլ արդյունաբերության արտադրության ծավալն ավելանալու է մոտ 40 տոկոսով, սննդի արդյունաբերությանը՝ 39 տոկոսով, կաշվի-կոշիկի արդյունաբերությանը՝ 64 տոկոսով, կաուչուկի արդյունաբերությանը՝ 67 տոկոսով և այլն։

★ Երրորդ հնգամյակում տեղական արդյունաբերության արտադրանքի թողարկումն ավելանալու է 65 տոկոսով, որը 1957 թվականի համեմատությամբ 60 տոկոսով ավել է։



★ Ժողովրդական ռեսպուբլիկան այժմ ունի մետալուրգիական, մեքենաշինական, էլեկտրատեխնիկական, քիմիական, նավթային արդյունաբերություն, որը անցյալում նա չուներ։ Նավթի արդյունաբերությունը երկրում սկսվել է 1954 թվականից։

★ Անցյալ տարի, նախորդ տարվա համեմատությամբ, արդյունաբերության արտադրանքի ընդհանուր ծավալը ավելացավ 15 տոկոսով։

★ 1957 թվականին երկրում հայտնաբերվեց արճճի և ցինկի նոր հանքավայրեր, որոնց պաշարները նախնական տվյալներով կազմում են ավելի քան 10 միլիոն տոննա։

★ Շարք է մտել մի նոր դոմենյան վառարան, որը երկրին ամեն տարի տալու է 117 հազար տոննա չուգուն և մարտենյան վառարանը Լենինի անվան մետալուրգիական կոմբինատում։

★ 1957 թվականին բանվորների և ծառայողների ընդհանուր թիվն ավելացել է 323 հազար մարդով։

★ Ռեսպուբլիկայում լայն հեռանկարներ է բացվում էլեկտրաարդյունաբերության զարգացման համար։ Նախատեսված է 1962 թվականին արտադրել 5 միլիարդ կիլովատ-ժամ

էլեկտրաէներգիա, կամ 88 տոկոսով ավելի, քան արտադրվում էր 1957 թվականին։

★ Բուլղար ժողովուրդը խոշոր հաջողություններ է ձեռք բերել գյուղատնտեսության զարգացման բնագավառում։ Մշակվող հողերի 92 տոկոսը կոոպերացված է, որը հնարավորություն է տալիս մեքենայացնել գյուղատնտեսական աշխատանքները։

★ Անցած հինգ տարում տրակտորային պարկը ավելացել է 2,2 անգամ, իսկ կոմբայններինը՝ 3,2 տոկոսով։

★ Գյուղատնտեսության մթերքների արտադրության մոտ 90 տոկոսը պատկանում է սոցիալիստական սեկտորին։

★ 1957 թվականին, մեծ չափերով ավելացավ գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվությունը։ Առաջին հնգամյակի համեմատությամբ ձիթատու կուլտուրաների բերքատվությունը բարձրացավ 8 տոկոսով, ցորենինը՝ 12,7 տոկոսով, ծխախոտինը՝ 28,3 տոկոսով, բանջարեղենինը 44,6 տոկոսով, եգիպտացորենինը՝ 53,4 տոկոսով, բամբակինը՝ 60 տոկոսով, շաքարի ճակնդեղինը՝ 71,9 տոկոսով և այլն։

★ 1962 թվականին, 1957 թվականի համեմատությամբ, գյուղատնտեսական մթ-



թերքների համախառն արտադրանքը ավելանալու է 35 տոկոսով։

★ Նախատեսվում է 1962 թվականին հացահատիկային կուլտուրաների արտադրությունը հասցնել 2 միլիոն 750 հազար տոննայի, 1957 թվականի 2 միլիոն 500 հազար տոննայի փոխարեն, բամբակինը՝ 65 հազար տոննայի, 1957 թվականի 48 հազար 800 տոննայի դիմաց, ծխախոտինը՝ 80 հազար տոննայի, 1957 թվականի 74 հազար 700 տոննայի դիմաց։

★ Գյուղատնտեսության արտադրության մեջ զգալի տեղ է գրավում այգեգործությունը և խաղողագործությունը։ 1956 թվականին ռեսպուբլիկայում կար 146 հազար հեկտար խաղողի և 108 հազար հեկտար պտղատու այգի։ 1962 թվականին խաղողի այգիների տարածությունը կավելանա և կհասնի 650 հազար հեկտարի, իսկ պտղատու այգիներինը՝ 550 հազար հեկտարի։

★ Երկրում 1956 թվականին ոռոգվող հողերի տարածությունը ավելացավ 360 հազար հեկտարով, իսկ 1962 թվականին այն կկազմի մոտ 2 միլիոն հեկտար։

★ 1956 թվականին երկրում կար 24,6 հազար տրակտոր և 3 հազար կոմբայն, իսկ 1962 թվականին տրակտորների թիվը կհաս-





նի 36 հազար 340-ի, կոմբայններինը՝ 9600-ի։

★ Արդյունաբերության և գյուղատնտեսության զարգացման հետ միասին անընդհատ աճում է ազգային եկամուտը։ 1948 թվականից մինչև 1957 թվականը ազգային եկամուտն ավելացել է միջին հաշվով տարեկան 8—9 տոկոսով։

Անցյալ տարի ազգային եկամտի 93 տոկոսը ստացվեց սոցիալիստական սեկտորից։

★ Երկրում ուժեղ թափով առաջ է գնում բնակարանային շինարարությունը։ Միայն 1953 թվականից մինչև 1956 թվականը կառուցվել և շահագործման է հանձնվել 97 հազար բնակելի տներ, որը կազմում է գյուղերի բնակելի ֆոնդի 12 տոկոսը։

★ Խոշոր հաջողություններ են ձեռք բերվել նաև կուլտուրական շինարարության բնագավառում։ Մինչև Բուլղարիայի ազատագրումը երկրի ավելի քան 1.600 բնակելի վայրում չկար և ոչ մի դպրոց։ Այժմ երկրում չկա թեկուզ մեկ գյուղակ, որտեղ դպրոց չլինի։ 7-ամյա դպրոցներում սովորում են բոլոր երեխաները։

★ Առաջ Բուլղարիայում կար 10 թատրոն, այժմ այն հասնում է 47-ի, կար 155 կինոթատրոն, այժմ այն հասնում է 1.195-ի։



Կինոհանդիսատեսների թիվն ավելացել է 4 անգամ։

★ Բուլղարիայում այժմ լույս է տեսնում ավելի քան 250 թերթ և 100 ամսագիր։

Ինչպես տեսնում ենք Բուլղարիայի ժողովրդական տնտեսությունն ապրում է բուռն վերելք։

---

## СОДЕРЖАНИЕ



---

**Ի տ. խմբագրի՝ Վ. ԵՆԳԻԲԱՐՅԱՆ**